


*ԲՈՐԻՍ ՆԻԿՈԼՍԿԻ*

1917 թվականի ծննդյան տարեդարձը Լենինի համար ուրախ օր էր: Ապրիլ ամսին նա վերադարձավ Ռուսաստան:

Պետրոգրադի բանվորներն ու հեղափոխական մարտիկները խանդավառված ընդունեցին իրենց առաջնորդին:

Ժողովուրդը դեռ փետրվար ամսին գահընկեց էր արել ցարին: Սակայն երկրում իշխանությունն իրենց ձեռքն էին վերցրել կապիտալիստներն ու կալվածատերերը, որի պատճառով էլ պայքարը դեռևս շարունակվում էր:

Լենինը Ռուսաստան վերադառնալիս երկար ու դժվարին ճանապարհ էր կտրել, բայց չհանգստացավ և ոչ մի օր: Նա անմիջապես անցավ աշխատանքի: «Պրավդա» թերթն էր խմբագրում, հոդվածներ գրում, ելույթ ունենում ժողովներում և միտինգներում:

Լենինն իր ծննդյան օրը սովորականի նման աշխատում էր «Պրավդայի» խմբագրությունում: «Պրավդա» թերթի խմբագրությունն այն ժամանակ տեղավորված էր մի մեծ, վեցհարկանի շենքում, որը գտնվում էր Մոյկա գետի ափին՝ Նևսկու պողոտայի մոտ: Այդ հսկայական շենքում խմբագրության տրամադրության տակ երկու սենյակ կար միայն: Սենյակները փոքր էին և մութ, որի պատճառով ցերեկներն անգամ էլեկտրական լույս էր վառվում:

«Պրավդայի» խմբագրությունում աշխատելը դժվար էր և վտանգավոր:

Լենինի թշնամիների երազանքն էր՝ վերացնել խմբագրությունը: Նրանք տարածում էին, իբր, Լենինը գերմանական հետախույզ է: Այդ մասին գրում էին իրենց թերթերում, հայտարարում միտինգներում:

Մի անգամ, երբ Լենինը զբաղված էր շատ շտապ աշխատանքով, խմբագրություն ներս ընկավ Ալեքսանդրա Միխայլովնա Կոլլոնտայը: Լենինը լավ էր ճանաչում Ալեքսանդրա Միխայլովնային: Նա հաստատուն հեղափոխական էր և իր ընկերը:

— Վլադի՛միր Իլյիչ,— անհանգստացած ասաց Ալեքսանդրա Միխայլովնան,— պետք չէ կորցնել և ո՛չ մի րոպե: Անհապաղ հարկավոր է հեռանալ:

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց Լենինը:

Կոլլոնտայն արագ և հուզված պատմեց, որ Նևսկու պողոտայում հավաքված հարբած ամբոխն ուղևորվում է այստեղ՝ «Պրավդան» ոչնչացնելու:

— Իսկ որտե՞ղ են նրանք, հեռո՞ւ են,— հարցրեց Լենինը:

— Արդեն Կոնյուշեննայան անցել են:

— Դե՛, ուրեմն դեռ կհասցնե՛նք առաջնորդողն ուղղել,— հանգիստ ասաց Լենինը և շարունակեց աշխատել:

Բայց Կոլլոնտայը չէր կարողանում հանգստանալ: Մի քանի րոպե հետո նա բաց պատուհանից դուրս նայեց և ականջ դրեց: Արդեն լսվում էր ամբոխի աղմուկն ու գոռում-գոչյունը:

— Վլադի՛միր Իլյիչ, նրանք արդեն թեքվում են դեպի Մոյկա:

— Ավելի լավ կլինի զանգահարեք ԿԿ,— ասաց Լենինը,— թող այստեղ պահակախումբ ուղարկեն:

Նա արագ ինչ-որ բան ավելացրեց, ջնջեց մի քանի տող, մեկ անգամ ևս կարդաց գրածը: Այժմ կարելի էր հոդվածն ուղարկել տպարան:

Երբ Լենինը վերջապես դուրս եկավ խմբագրությունից, ջարդարարներն արդեն բոլորովին մոտիկ էին: Սակայն նույն այդ րոպեին հակառակ կողմից խմբագրության շենքին էր մոտենում հեղափոխական

---

*Սկիզբը՝ «Պիոներ» № № 1, 2։*

կինվորներով լի բեռնատար մի ավտոմեքենա:

Հարձակումը կասեցվեց: Հաջորդ օրը, սովորականի նման, լույս տեսավ «Պրավդա» թերթը:

Իր ծննդյան օրը Լենինը ոչ միայն աշխատում էր «Պրավդայի» խմբագրությունում, այլև ելույթ ունեցավ կինվորների միտինգում:

Այդ միտինգին մասնակցում էր բալթյան նավաստի, հեղափոխական Լուկա Չուբունովը: Նա եկել էր հատկապես Լենինին լսելու: Միտինգը սկսվելուց շատ առաջ էր եկել, բայց ամբողջ դահլիճն արդեն լցված էր կինվորներով ու սպաներով:

Լուկա Չուբունովի կողքին կանգնած էր կեղտոտ շինել հագած մորուքավոր մի կինվոր:

— Նավաստի՛, ա՛յ նավաստի,— հարցրեց նա,— թերթերը ճի՞շտ են գրում, որ Լենինը վաճառված է գերմանացիներին:

— Ո՛չ,— բարձր ասաց Չուբունովը,— այն, ինչ բուրժուաները գրում են Լենինի մասին իրենց թերթերում, սուտ է:

Այդ ժամանակ նրա մոտ խցկվեց մի սպա և գոռաց.

— Դու, ի՞նչ է, այստեղ ագիտացիա՞ ես անում, գերմանական հետախույզ: Ապա մի հեռացի՛ր, թե չէ՝ վզակոթիդ կիասցնեմ:

Սպան ուզում էր բռնել նավաստու վերնահագուստի թևքերից, բայց կինվորներից մեկը քաշեց նրա շինելի օձիքը, մյուսը հրեց նրան: Երևի սպայի գործը շատ վատ վերջանար, եթե այդ րոպեին չգար Լենինը:

Նա բարձրացավ ամբիոն և խիկույն լռություն տիրեց:

Լենինը խոսում էր պարզ և հասկանալի:

Նա ասում էր, որ երկրում իշխանությունը, ամենախուլ գյուղից մինչև Պիտերի յուրաքանչյուր թաղամաս, պետք է անցնի բանվորներին ու գյուղացիներին: Ո՛չ թե ոստիկաններն ու պետական պաշտոնյաներն, այլ ի՛նքը ժողովուրդը պետք է կառավարի երկիրը: Գյուղացիներն ու բանվորները միայն այսպիսի իշխանությունը կարող են հարգել:





Զինվորները լարված լըսում էին Լենինին: Երբ նա ավարտեց իր խոսքը, ամեն կողմից լսվեց «ուռա՜» բացականչությունը:

Նավաստի Լուկա Չուբունովը գնաց Լենինին ավելի մոտ: Վլադիմիր Իլյիչը նկատեց նրան և հարցրեց.

— Դուք բոլշևի՞կ եք:

— Այո՛,— հպարտությամբ պատասխանեց Լուկան:

— Բալթյան նավաստիները լավ մարդիկ են, նրանք առանց ուժեր խնայելու կկռվեն իրենց խորհըրդային իշխանության համար:

Իլյիչը երկար զրուցում էր կինվորների և նավաստիների հետ: Իսկ երբ մեկնեց, Լուկա Չուբունովն իր կողքին նորից տեսավ մորուքավոր կինվորին:

— Այո՛, եղբա՛յր... Լենինը ճշմարիտ է...—ասաց կինվորը:— Այժմ ես ամենքին կպատմեմ այդ մասին...

Ո՛չ կինվորը, ո՛չ էլ բալթյան նավաստի Լուկա Չուբունովը չգիտեին, որ այդ օրը, երբ լսում էին Լենինին, նրա ծննդյան օրն էր: Երևի Լենինն ինքն էլ չհիշեց այդ մասին, քանի որ չափազանց շատ հոգսեր ու գործեր ուներ:

(Շարունակելի)

# ԹԱՆԳԱՐԱՆՈՒՄ

*ՎԼԱԴԻՄԻՐ ՄԱՂԱԼՅԱՆ*

Առաջնորդի թանգարանում
Պահպանվում է մի գորշ շինել,
Զինվորներն են տարել մի օր
Ու Իլյիչին նվեր տվել:

Ժպտացել է Իլյիչն ուրախ
Ու գցել է շինելն ուսին
Եվ այսպես է դիմել նրանց.
— Սա կսազի կռվող քաջին:

Սա կսազի միայն նրան,
Ով կռվում է զենքը ձեռքին
Մարդկանց ուրախ կյանքի համար,
Բախտի համար հայրենիքի:

Բայց ձեր բերած նվերը թանկ
Ընդունում եմ ես մեծ սիրով,
Ու, թե առիթ լինի հանկարծ,
Ինձ կտեսնեք այդ շինելով:

Եվ պահվում է մինչև այսօր,
Որպես մասունք՝ սիրով անհուն
Զինվորական մի գորշ շինել
Մեծ Իլյիչի թանգարանում:



# ԵՐԳ ՄԱՅՐԻԿԻՍ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Երկինքն իմն է
Իր կապույտով,
Երբ մայրիկիս
Աչքերը կան:
Ինձ են նայում
Մոր ժպիտով
Մթնշաղի
Աստղերն անգամ:

Ինձ գարունն է
Գրկում բույրով,
Երբ մայրիկիս
Ձեռքերը կան,
Հավքն է շոյում
Լույս փետուրով,
Երբ մայրիկիս
Երգերը կան:

Մեղմանում է
Բուքը սարի,
Երգ են թվում
Հողմերն անգամ,
Երբ աշխարհում
Իմ մայրիկի
Ջերմ ու բարի
Խոսքերը կան:

Իմ երգի մեջ
Ձմեռ-ամառ
Երջանկության
Աղբյուրը կա,
Միշտ գարուն է
Սրտիս համար,
Երբ մայրիկիս
Համբույրը կա:

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

# Կախարդական վրձինը

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Հայրս ուսուցիչ էր: Նա շատ ընկերներ ուներ, բոլորն էլ տարբեր զբաղմունքի տեր. ուսուցիչ, դերասան, փականագործ, բժիշկ, նկարիչ... Նա իր բոլոր ընկերների մասին գովեստով էր խոսում, բոլորն էլ լավ, հաճելի, զարգացած, ընդունակ մարդիկ էին: Բայց նրանցից մեկի մասին նա պատմում էր միշտ արտակարգ հիացմունքով: Դա նրա ընկեր նկարիչ Պետրոս Վարդազարյանն էր:

— Նա մի աննման մարդ է, անսահման բարի՜: Իսկ նրա վրձինը կախարդական վրձին է...

Այս բառերն ինձ վրա արտակարգ տպավորություն էին թողել: «Կախարդական վրձի՜ն»... տեսնես ինչպիսի՞ն է այդ կախարդական վրձինը: Այնպե՜ս էի ուզում տեսնել Պետրոս քեռու կախարդական վրձինը: Իսկ հայրս ինձ նրանց մոտ չէր տանում, ասում էր՝ նրանց տանը փոքրիկներ չկան, որ հետները խաղաս:

Եվ կարո՞ղ եք պատկերացնել իմ ուրախությունը, երբ մի կիրակի օր հայրս սափրվելուց և հագնվելուց հետո ասաց.

— Դե՛հ, Լևո՛ն, պատրաստվի՛ր. գնում ենք Պետրոս քեռու մոտ: Դու նրա նկարները կնայես, իսկ մենք մի փոքր կզրուցենք: Միայն, տե՛ս, հա՜, չարություն չանես, նկարներին ձեռք չտաս:

Երբ ներս մտանք, քեռի Պետրոսը ծաղիկներն էր ջրում: Նա ժպտադեմ դիմավորեց մեզ, առաջարկեց նստել և շարունակեց իր գործը:

Հայրս նստեց, իսկ ես չորս կողմս էի նայում, ուզում էի տեսնել կախարդական վրձինը: Բայց այն ոչ մի տեղ չէր երևում:

— Դե՛հ, տղա՛ս, չե՞ս ուզում իմ նկարները նայել,— ասաց քեռի Պետրոսը, ավարտելով իր գործը:

— Իհարկե ուզում եմ:

— Գնա՛ աջ կողմի սենյակը, ուշադիր նայի՛ր նկարները, հետո ես կգամ և կզրուցենք քո տպավորությունների մասին:

Ես մտա հարևան սենյակը: Պատերին բազմաթիվ մեծ ու փոքր նկարներ էին կախված, իսկ մի եռոտանու

վրա դրված էր մի կիսավարտ նկար. պաստառի մի մասը մաքուր էր, իսկ մյուս մասում նկարված էր գույնզգույն ծաղիկներով ծածկված դաշտ: Մի փոքրիկ աղջիկ, կարմիր շրջազգեստով, ծաղիկ էր փնջում: Քամին թափահարում էր շրջազգեստի փեշերը, մազերի սպիտակ ժապավենը, իսկ նա ժպտում էր... Ու հանկարծ հայացքս ընկավ ներկապնակի կողքին դրված վրձիններին: Մի պահ սարսռացի, թվաց, թե հիմա ինչ-որ արտակարգ բան պետք է կատարվի: Բայց ոչինչ չկատարվեց: Ես մոտեցա վրձիններին և սկսեցի ուշադիր զննել. «Տեսնես ո՞րն է սրանցից կախարդականը»:

Զրուցելով ներս մտան հայրս և քեռի Պետրոսը:

— Հը՞, Լևո՛ն, նայեցի՞ր բոլոր նկարները,— հարցըրեց քեռի Պետրոսը:

— Նայեցի, շատ հետաքրքիր են, բայց... քեռի՛ Պետրոս... սրանցից ո՞րն է կախարդական վրձինը:

— Կախարդական վրձի՞ն, ի՞նչ վրձին,— կարծես հարցս չհասկանալով՝ հարցրեց Պետրոսը:

— Հայրս ասում է, որ դուք կախարդական վրձին ունեք,— ասացի ես, միաժամանակ մտածելով, որ հայրըս երևի ճիշտ չի ասել:

— Հա՜-ա՜, կախարդակա՜ն, դե իհա՜րկե, իհա՜րկե,— ասաց նա ժպտալով,— բայց դա մեկը չէ, իմ բոլոր վրձինները կախարդական են: Ահա՛, նստի՛ր և նայի՛ր:

Նա վերցրեց ներկապնակն ու վրձինները և մոտեցավ կիսավարտ նկարին: Շուտով դաշտի մյուս մասն էլ ծածկվեց ծաղիկներով, դաշտի եզրին մի ձորակ հայտնվեց: Ձորակի միջով գետակն էր հոսում, իսկ գետակի ափին մի խարխուլ ջրաղաց կար...

«Իսկապես կախարդական են վրձինները,— մտածեցի ես,— մի՞թե հասարակ վրձիններով հնարավոր է այսպես նկարել»:

— Կուզե՞ս այս «կախարդական» վրձիններից մեկը քեզ նվիրեմ:

Մի՞թե կարող էի չուզել: Ուրախությունից շունչս կտրվում էր:

— Ահա՛, այս վրձինը քե՛զ: Հիմա փորձիր մի բան նկարել,— ասաց նա, իմ դիմաց դնելով մի փոքրիկ մաքուր պաստառ:

Շատ փորձեցի, ոչինչ չստացվեց. գույները խառնըվում էին իրար, ծաղիկների փոխարեն կեղտոտ բծեր էին ստացվում: Ես ամոթից կարմրել էի ու քրտնել:

— Սա կախարդական վրձին չէ, դուք ինձ հասարակ վրձին եք տվել,— դժգոհ փնթփնթացի ես:

— Ո՛չ, սիրելի՛ս,— ասաց նա, ձեռքը ուսիս դնելով,— հասարակ վրձին չկա, բոլոր հասարակ վրձիններն էլ հմուտ ձեռքերում կախարդական են դառնում: Սովորիր լա՛վ նկարել, և քո ձեռքերում էլ վրձինը կախարդական կդառնա:

# ԲՈՂԲՈՋԸ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Շուրջը ճերմա՜կ, ճերմակ ձյուն էր,
Բուք, բորան էր, սարսուռ,
Պաղ ու խաղաղ լռություն էր
Այգում տխո՜ւր, տխո՜ւր:
Փոքրիկ, փոքրիկ մանկան նման
Բարուրված տաք շորով,
Քնած էին ծառի վրա
Բողբոջները բոլոր...
Սակայն մի օր արևը ջերմ
Ժպտա՜ց, ժպտա՜ց հողին,
Ձյունը լալով փախավ հեռու,
Կպավ սարի կողին:
Բայց դեռ մի ահ սրտերի մեջ,
Հոգիներում թախիծ,
Չէին բացում աչիկները
Բողբոջները վախից:
Իսկ մեկը քաջ ու համարձակ,
Սրտում լույսի կարոտ,
Նետեց մի կողմ վերմակը տաք
Մի պայծառ օր շաղոտ:
Տեսավ ձորում առվակն արդեն
Խոխոջում է, հոսում,
Ծիտիկներն են թռչում դես-դեն,
Ջվարթ երգեր ասում,
Ինքն էլ խնդաց, ուրախացավ,
Այնպե՜ս ճչաց ուժգին,
Որ իր քույրերն էլ արթնացան,
Ուրախ ժպտաց այգին:

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ





*«Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի 1969 թ. գրական լավագույն ստեղծագործության մրցանակը շնորհվեց գրող ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆԻՆ՝ «Մի անձրևոտ օր» պատմվածքի համար:*



*«Կրկեսի շնիկը», «Մանուշակ», «Նա» ստեղծագործությունների նկարազարդման համար նկարիչ ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԸ արժանացավ 1969 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:*

1969 ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ • 1969 ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐ



յլ ժամանակներ էին...

Ծեգը-ծեգին թավուտներում բաքնված խրճիթներից դուրս էին գալիս շինականները և փայտե արորով ջուռ տալիս սևահողը: Հարթավայրի հեռուներում ու բլուրների լանջերին, ջինջ օդում կրնգում էր հորովելը:

Ծանր, դժվար ժամանակներ...

...Վանքի կողմից լսվում էր տխուր մի կանգահարություն: Տագնապալի ու նվաղող ղողանջները տարածվում էին դեպի հեռուները, հասնում մինչև լեռնափեշերին ծվարած գյուղերն ու ավանները:

Տագնապ և կուսպ լարվածություն կար այդ օրը շինականի երգում. դարավոր թթենիների տակ բուրդ գզող կանանց մատների վարժ շարժումներում, աղբյուրից ջուր բերող հարսների սահուն քայլվածքում:



...Բլրակի լանջին հայտնվեց մի կերպարանք, որն արագ-արագ քայլում էր դեպի գետակը:

Նա կանգ առավ ուռենու մոտ. նայեց աջ, հետո՝ ձախ. քորեց ծոծրակը և նույնիսկ վրդովմունքից ուռցրեց թշերը, որովհետև առայժմ տասնչորս-տասնհինգ տարեկան պատանի էր ու դեռ չէր մոռացել մանկական խռովկանությունը:

Նա կանգնեց այդպես միառժամանակ, հետո ափերը մոտեցնելով բերանին, ձայն տվեց.

— Է՜-հե՜յ-հե՜յ...

Ոչ ոք չարձագանքեց նրան:

— Վարդի՜-ի՜-ի՜կ...

Պատանին հուսահատված ու խռոված նստեց գետնին:

Ետ գնալ չէր ուզում: Բայց սպասելն էլ ձանձրալի էր: Ուստի սկսեց փոքրիկ քարեր նետել գետախորշի մեջ, որտեղ ջուրը գրեթե անշարժ էր ու հարթ մակերևույթի վրայով ետ ու առաջ էին սահում տարօրինակ, փոքրիկ միջատները: Քարերի հարվածներից ջուրն ալեկոծվում էր, և միջատները հաճույքով ճոճվում էին մանր ալիքների վրա:

...Ամեն օրվա պես, այս առավոտ էլ՝ լույսը նոր բացված, նա իր անվարժ ձեռքով սկսել էր ծաղկել ձեռագիր մատյանը: Ծաղկե՜լ... Հոգու խորքում նա հպարտորեն կրկնում էր այդ հմայիչ բառը, թեև շատ լավ գիտեր, որ քանի՜-քանի տարիներ պետք է անցնեն, մինչև մարդիկ պատկառանքով ու հարգանքով ասեն նրա մասին «Թորոս ծաղկող»:

Անցյալ շաբաթ տղան ավարտեց մոտ երկու հարյուր տարի առաջ Գրիգոր Մագիստրոս Պահլավունու թարգմանած Էվկլիդեսի «Երկրաչափության» նոր ձե-



ռագրի գծանկարները: Իսկ երեկ վարպետը՝ Մժեժ գրիչը, հանձնարարեց մի նոր գործ: Դա վեց հարյուր տարի առաջ գրված «Աշխարհացույցն» էր՝ նշանավոր մաթեմատիկոս ու աստղագետ Անանիա Շիրակացու հեղինակությամբ: Մժեժ գրիչը նորից արտագրել էր այդ աշխատությունը ու տղան բնագրից պետք է արտանկարեր գծագրերն ու աղյուսակները:

Անցյալ տասնամյակների, հարյուրամյակների ընթացքում ժողովուրդը բազմիցս ապստամբել էր արաբների տիրապետության դեմ, հետո Անին դարձել էր

նույն պահին եղեգնուտի կողմից լսվեց մի ձայն.

— Թոդրո՜ս...

Եվ հետո, ծիծաղից թուլանալով, եղեգնուտից դուրս եկավ Վարդիկը:

Տղան չիմացավ, բարկանա՞, թե՞ ուրախանա այդ անտեղի կատակի համար, և այն էլ հատկապես՝ այսօր:

— Թաքնվել էիր,— ասաց նա:— Այդպես էլ գիտեի:

Աղջիկը շարունակում էր ծիծաղել, որովհետև համոզված էր՝ Թոդրոսը ոչինչ էլ չգիտեր:

Պատանին բռնեց Վարդիկի ձեռքը.

— Առավոտյան սուրհանդակ եկավ:

Վարդիկը շփոթված նրան նայեց:

— Մուղանի կողմից մոնղոլները խուժել են մեր




ԿԱՐԵՆ Ա. ՄԻՐԱՆՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

մայրաքաղաք, հետո հարձակվել էր Բյուզանդիան ու տապալել Հայոց թագավորությունը, հետո սկսվել էին սելջուկների ասպատակությունները: Եվ մարդիկ մոռացության էին տվել այն գանձերը, որ անցյալ ժամանակներում ստեղծել էին նախահայրերը: Բայց հիմա Մժեժ գրիչն ու նրա նման բազմաթիվ ուրիշներ, կիսախավար խցերում նստած, նորից ու նորից արտագրում էին հինավուրց ձեռագրերը, որոնք պետք է կարմնահրաշ գիտություններ ուսուցանեին դպրոցներում, նախնիների լույսը դարերի միջով պետք է հասցնեին հեռավոր սերունդներին:

Եվ առայժմ, մինչև ձեռքը վարժվեր, տղան կարկինով շրջաններ էր գծում միայն, եռանկյունիներ ու քառակուսիներ. գծում էր սևով ու կարմիրով, գծում էր սիրով ու երկյուղածությամբ:

Ազատ ժամերին տղան փորձում էր նկարել: Մագաղաթի պատառիկների վրա նա արտանկարում էր այն տեսարանները, որոնք պատկերում էին նույն այս վանքի կառուցումը տասներորդ դարում: Պատանին դրանք արտանկարում էր Վարդիկի համար: Իսկ աղջիկը, ամեն անգամ այդպիսի արտակարգ նվեր ստանալիս, ճչում էր ուրախությունից և իսկույն ստիպում, որ էջի տակ տղան ստորագրի՝ «Թոդրոս»:

...Թոդրոսը մի բուռ ավազ վերցրեց, շփեց ներկոտ ափերը, լվացվեց ու որոշեց վերադառնալ վանք:

Երբ նա քայլերն ուղղեց բլրալի լանջն ի վեր, գետակի եղեգնուտից խշշոց լսվեց: Թոդրոսը մեխվեց տեղում ու ականջ դրեց:

Խշշոցը դադարեց:

Պատանին ուզեց շարունակել ճանապարհը, բայց

երկիրը,— ասաց Թոդրոսը:— Վարպետն ասաց, որ գրչի փոխարեն սուր ենք վերցնելու հիմա:

Աղջիկը կծկվեց:

— Առաջին հերթին թաքցնելու ենք ձեռագիր մատյանները,— ասաց պատանին:— Կօգնե՞ս:

Վարդիկը հուզված տրորում էր կրծքի վրա շղթա-



յից կախված փոքրիկ երեքնուկը:

— Իսկ հետո ի՞նչ կլինի,— գրեթե շշուկով հարցրեց նա:

Մի քայլ ցածում վշշում էր գետը: Փրփրած ջուրը կարկվում էր լերկ քարերին, իսկ ցայտերը փոքրիկ-փոքրիկ ծիածաններ էին կապում արևի ճառագայթներից:

Զանգերի ղողանջները գալիս հասնում էին նրանց ու անցնում գնում դեպի հեռուները: Արևը կախվել էր զենիթից, և անծայր հարթավայրում լռել էր ակոսներ բացող շինականի հորովելը:

...Մեծ բազմություն էր հավաքվել վանքի գավթում:

Թոդրոս ու Վարդիկ պատանիները մտան վանք

# ՆԿԱՐՆԵՐ ՀԱՓՇՏԱԿՈՂՆԵՐԸ

*— Ինչո՞վ կարող եմ օգտակար լինել,— հարցրեց իտալական դեսպանը իր աշխատասենյակը մտած, կապույտ, սառը աչքերով գեր մարդուն, որի հետ բարձրահասակ մի կին կար՝ դեմքի խիստ և ամբարտավան արտահայտությամբ: Տղամարդը ձեռքին հաստ թղթի մեծ ու տափակ փաթեթ ուներ:*

*— Իմ ազգանունն է Մեյնդլ... Յոհան Մեյնդլ, ծագումով գերմանացի, 1955 թվականից Ամերիկայի հպատակ, ապրում եմ Լոս-Անջելոսում,— ներկայացավ տղամարդը:— Առաջարկում եմ գնել այս երկու կտավը:*

*Տղամարդը բաց արեց փաթեթը, և դեսպանը տեսավ երկու հրաշալի նկար, որոնց վրա պատկերված էր Հերկուլեսը: Մի նկարում նա մենամարտում էր Հիդրայի հետ, իսկ մյուսում՝ Անթեյի: Երկու կտավներն էլ կատարված էին բարձր վարպետությամբ:*

*— Օ՜-օ-օ՜,— հիացած բացականչեց դեսպանը:— Բայց սա իտալացի դասական Պոլլայոլոյի ոճն է:*

*— Այո՛, սրանք օրիգինալներ են...*

*— Սպասե՛ք, սպասե՛ք... Եթե չեմ սխալվում, սրանք այն կտավներից են, որոնք անհետացել են Ֆլորենցիայի Ուֆիցի պատկերասրահից: Որքան ինձ հայտնի է, 1944 թվականի հուլիսին, գերմանացիները Իտալիայից նահանջելիս, Գյորինգի համար տարել են իտալացի վարպետների մոտ վաթսուն արժեքավոր աշխատանք:*

*— Այդ մասին ես տեղյակ չեմ,— կմկմաց գերմանացին:— Ես սրանք նվեր եմ ստացել: Ձեզ եմ առաջարկում երկու հարյուր հազար դոլլարով: Դուք համաձա՞յն եք:*

*Դեսպանը ոչինչ չպատասխանեց: Նա զննում էր ժամանակին անհետացած ու հիմա նորից հա-*

---



ու պղնձակոփ դռնից անցան ներս, ուր վառվում էին երկու ճրագամոմ:

— Վարպե՛տ,— խուցերից մեկի մոտ կանգնելով, ձայն տվեց Թոդրոսը:

Մժեժ գրիչը գլխաբաց ու ասես մի ծանր բեռան տակ կորացած, կանգնեց նրանց առաջ:

— Եկա՛նք, վարպետ,— ասաց Թոդրոս պատանին:

Մժեժ գրիչը մի կողմ քաշվեց, ու նրանք ներս մտան:

Խցի կենտրոնում դրված էր բոլորովին նոր մի սնդուկ: Վանքի բոլոր գրքերը արդեն բերել էին այդտեղ: Մժեժ գրիչը խնամքով ու համբերությամբ ընտրում էր ամենաարժեքավորներն ու դարսում իրար վրա:

Թոդրոս ու Վարդիկ պատանիները սնդուկի մեջ տեղավորեցին վարպետի ընտրածները: Սնդուկը կիսով լցվեց, իսկ Մժեժ գրիչը դեռևս ընտրում էր ձեռագիր մատյանները:

Դրանք իսկապես արժեքավոր ձեռագրեր էին: Շատերը՝ բնագրեր, որոնք հարյուրամյակների ընթացքում չէին կորել կամ քայքայվել, շատերն էլ Մժեժ գրիչի արտագրածներն էին, որոնց բնագրերը արդեն մաշվել ու շարքից դուրս էին եկել:

Երեխաները մոտեցան խցի նեղլիկ պատուհանին:

— Թոդրո՛ս,— շշնջաց Վարդիկը:

— Ասա՛:

— Երանի մի քանի ամիս հետո հենց մենք էլ դատարկենք սնդուկը:

— Ո՞վ գիտե,— ասաց Թոդրոսը:— Գուցե մի քանի տարի հետո կդատարկենք:

— Միևնույն է, թեկուզև տասնամյակներ հետո,— ասաց Վարդիկը:— Բայց երանի այնպես լինի, որ մենք դատարկենք: Ես կարտագրեմ, գրիչ կդառնամ, իսկ դու պատկերներ կգծես:

Մժեժ գրիչը սալահատակին չոքած՝ թերթում ու թերթում էր մագաղաթե մատյանները: Ընտրում էր, դնում մի կողմ: Հետո նորից էր ընտրում արդեն ընտրածներից:

— Եթե սնդուկի մեջ մի որևէ բան թողնենք, ապա ինքներս էլ կդատարկենք,— ասաց Վարդիկը:

— Ի՞նչ թողնենք:

Վարդիկը վզից հանեց երեքնուկով շղթան.

— Երեքնուկը:

— Մի՛ արա,— ասաց Թոդրոսը:— Ես դա նվիրել եմ քեզ, որպեսզի մեզ երջանկություն բերի:

— Կբերի,— ասաց Վարդիկը:— Եվ մենք ինքներս կդատարկենք սնդուկը:

Վարդիկը երեքնուկով շղթան դրեց գրքերի արանքում:

Դնելիս աղջկա շրթունքները շարժվում էին, բայց Թոդրոսը այնպես էլ չկարողացավ հասկանալ, թե նա ինչ է աղերսում ճակատագրից:

...Իրիկնադեմին չորս հաղթանդամ շինական փակ

րությունն առած երկուսը այն հարյուրավոր գանձերից, որոնք հափշտակել էին հիտլերականները: Գանձեր, որոնք վաղուց ի վեր համարվում էին ընդմիշտ կորած:

— Երեք օրից ձեզ կպատասխանեմ,— վերջապես ասաց դեսպանը:

Գերմանացիները վերցրեցին կտավները ու լուռ հեռացան:

Երեք օր շարունակ դեսպանը չէր կարողանում սթափվել: Չորրորդ օրը գերմանացի ամուսինները դարձյալ հայտնվեցին նրա աշխատասենյակում:

Դեսպանը բավական սառը ընդունեց նրանց.

— Այդ կտավները մերն են և պատկանում են Իտալիային: Դրանք հափշտակված են Ուֆիցի պատկերասրահից,— ասաց նա:

— Դա մեզ չի վերաբերում: Մենք սրանք գտել ենք աճուրդով, 1945 թվականին, Մյունխենում: Այժմ մեզ դրամ է հարկավոր, որի համար և որոշեցինք վաճառել: Վճարեք 400 հազար դոլլար և վերցրեք:

— Ինչպե՞ս, չէ՞ որ դուք ասացիք երկու հարյուր հազար:

Յոհան Մեյնդլը ծիծաղեց.

— Մենք խորհրդակցեցինք ամերիկյան փորձագետների հետ: Նրանք նկարներից յուրաքանչյուրը գնահատեցին երկու հարյուրից մինչև հինգ հարյուր հազար դոլլար: Իսկ մենք ուզում ենք ընդամենը չորս հարյուր հազար դոլլար:

Եվ այսպես, սկսվեց բավականին տհաճ մի պատմություն: Դեսպանը հայրենիք ուղարկեց նոր հարցում: Քննությունից հետո պարզվեց, որ 1945 թվականին Մյունխենում աճուրդով ոչ մի նըկար չի վաճառվել: Յոհան Մեյնդլը ընկավ ծուղակի մեջ: Նա մերթ պնդում էր, որ դրանք նվեր է ստացել, մերթ հավատացնում, որ գտել է: Ո՞րն էր ճշմարտությունը:

Թեև Մեյնդլը աշխատում էր ամեն կերպ թաքցնել իրականությունը, սակայն դժվար չէր կռահել, որ նկարները գողացված են:

Իտալիայից ժամանեց Ռուդոլֆ Սիվիրոն՝ պատերազմի ժամանակ գերմանացիների կողմից հափըշտակված նկարների որոնման իտալական հանձնաժողովի նա-

---

սնդուկը հանեցին վանքից և Մժեժ գրիչի, Թոդրոս ու Վարդիկ պատանիների ուղեկցությամբ իջան ձորը:

Շինականները սնդուկը թաքցրին քարանձավներից մեկում: Հետո կից անձավում, որը գաղտնարանին էր միանում նեղլիկ գետնանցքով, Մժեժ գրիչը մի մոմ վառեց ու ամրացրեց քարի ցցվածքին:

Երբ դուրս եկան քարանձավից, դրսում արդեն մութ էր: Թոդրոս ու Վարդիկ պատանիները մի քանի անգամ ետ նայեցին, որովհետև նրանց համար շատ արտակարգ էր ձորի խավարում, տձև, մութ ժայռերի մռայլության մեջ առկայծող լուսավոր շերտը:

...Հաջորդ օրը հարևան գյուղերից ու ավաններից եկած տղամարդիկ ու կանայք, ծերերն ու մանուկները սկսեցին ամրություններ կառուցել, նետերի սլաքներ ու տեգեր պատրաստել, սննդամթերքի պաշար կուտակել, որովհետև երկու հարյուր տարեկան վանքը դարձյալ դառնալու էր մի բերդ, մի ամրոց, որի մատույցներում տեղի էին ունենալու արյունահեղ ճակատամարտեր:

Հետո՞...

Թոդրոս ու Վարդիկ պատանիներին սնդուկի մեջ պահած երեքնուկը երջանկություն չբերեց: Նրանք սնդուկը չդատարկեցին ո՛չ մի քանի ամիս, ո՛չ մի քանի տարի և ո՛չ էլ մի քանի տասնամյակ հետո: Մոնղոլներն ավերեցին Հայաստանը, անցան Կովկասն ու ոտնակոխ արեցին ռուսական տափաստանները:

Իսկ մարդիկ շարունակեցին մոմ վառել ձորակի քարանձավում, որպեսզի երբեք չմարի խավարի մեջ միակ լուսավոր շերտը: Որովհետև մարդիկ սիրում էին լույսը:

## ՔԱՄԻ

Երգո՞ւմ ես, երգո՞ւմ,
Մի տող երեկո,
Այդ ի՞նչ ես երգում:
Մոլորվե՞լ ես դու
Ու որոնում ես
Ճամփաները հին:
Կորցրե՞լ ես արդյոք
Դու ինչ-որ մեկին
Ու նրա համար
Ծեծում ամեն դուռ,
Մտնում ամեն տուն
Ու ամեն անկյուն,
Փնտրո՞ւմ ես, փնտրո՞ւմ:
Այդպես մոլեգին
Դու ո՞ւմ ես փնտրում:

ԳԱՅԱՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Արտաշատի շրջ., գյուղ Վ. Արտաշատ,
10-րդ դաս.

խագահը: Եկավ նաև Ֆլորենցիայի Ուֆիցի պատկերասրահի դիրեկտոր Մարիա Բեկերուչին: Հանձնաժողովը հրաժարվելով գերմանացու պահանջած գումարը վճարել, նրան այնուամենայնիվ պատկառելի մի գումար առաջարկեց: Այդ ժամանակ Յոհան Մեյնդլի ամերիկացի փաստաբանները պահանջեցին, որ նրան վճարվեր յուրաքանչյուր նկարի համար երկու հարյուրական դոլլար: Իտալացի արվեստաբանները դիմեցին ֆեդերալ դատարանին, խնդրելով բռնագրավել հափշտակված նկարները: Դատարանը հայտարարեց, որ ինքը իրավասու չէ այդ անելու:

Իտալիայի և ԱՄՆ-ի որոշ թերթեր բացահայտեցին այն ստոր մեքենայությունները ու հանցագործությունները, որոնք թույլ էին տվել հիտլերականները, տնօրինելով իրենց դաշնակից երկրի արվեստի արժեքները: Շատ գլուխ-գործոցներ են անհետացել իտալական թանգարաններից: 1943 թվականի սեպտեմբեր ամսին Հիտլերի հրամանով Իտալիայում ստեղծվել էր «Արվեստի հուշարձանների պահպանման» մի կոմիտե: Մինչդեռ իրականում այդ կոմիտեն զբաղվում էր ամենաարժեքավոր նկարների, արձանների, հնագույն ձեռագրերի հափշտակությամբ: Գյորինգը սեփականացնում էր այն ամենը, ինչը իրեն դուր էր գալիս: Եվ ինքը՝ Մուսոլինին, ամեն կերպ օգնում էր նրանց այդ ստոր գործում: Նրա հրամանով, արվեստի ցանկացած ստեղծագործություն, որը հավանում էին Հիտլերը, Գյորինգը կամ Ռիբենտրոպը, անմիջապես ուղարկվում էր Գերմանիա: Մուսոլինին նվիրում և վաճառում էր Լեոնարդո դա Վինչիի, Տինտորետոյի և Վերոնեզեի կտավները: Հազարավոր անտիկ արձաններ և նկարներ Իտալիայից տարվում էին Գերմանիա:

Այժմ անհետացած նկարների որոնման իտալական հանձնաժողովը գործի է դնում իր բոլոր ջանքերը, որպեսզի հայրենիք վերադարձվեն հափշտակված գանձերը: Սակայն կկարողանա՞ն արդյոք հայտնաբերել այն ամենը, ինչ անհետացել է:

Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԻ






ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ



Գազաններին ստեղծողը
Ամեն մեկին անուն դրեց,
անուն դրեց
ու խնդրեց՝
Չմոռանալ անունն իրենց:

Եվ ցրվեցին ու հեռացան,
Անունն իրենց չմոռացան:

Միայն մեկը եկավ ձորից,
Իր անունը հարցրեց նորից,
Ստեղծողը քնքշանքով
Ասաց. «Էշ է անունը քո»:

Էշը գնաց,
Երկու օրից
Վերադարձավ էշը նորից.
Մոռացել էր իր անունը:
Նորից գնաց,
Եկավ նորից,
Ու կրկնվեց նորից նույնը.
Մոռացե՜լ էր իր անունը:
«Քո անունը է՜շ է, Իշո՛ւկ:
Երկու տառ է, ո՞նց չես հիշում»:

Բայց այդպես էլ նա չհիշեց
Ու ետ եկավ մի օր նորից:
Եվ այս անգամ մի լա՜վ քաշեց
Ստեղծողը ականջներից:
Քաշեց, ասաց. «Անունդ է՜շ է»:
«Անունդ է՜շ է»,— ասա՜ց, քաշե՜ց:

Եվ այն օրից խելոք էշը
Իր անունը արդեն հիշեց.
Էլ հարցնելու կարիք չկար,
Բայց ականջը... մնաց երկար:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



*Վ. Պլիչե*

Ամեն տարի մարտի 3-ին Ճապոնիայում կատարում են տիկնիկների տոնը: Այն «խինա մացուրի» է կոչվում: Այդ տոնակատարությունը շատ հին սովորույթ է: «Խինա» բառը նշանակում է «ճուտ», բայց այն վերաբերվում է միայն տիկնիկներին, քանի որ ժամանակին տիկնիկների տոնն ուղեկցվում էր աքլորների կռվով, իսկ տոնին մասնակից տիկնիկներին անվանում էին «Օ խինա սամա», այսինքն՝ «փոքրիկ (ճուտի նման) տիրուհի»: Այս անվանումը եղել է շատ վաղուց և ժողովրդի հիշողության մեջ միակցվել, ձուլվել է մեկ անվան մեջ (խինա), որով և կոչում են տոնակատարությունը: Իսկ «մացուրի» նշանակում է «տոն»:



Մարտի 3-ին յուրաքանչյուր ճապոնացու տան լավագույն սենյակում դրվում են տոկոնամաներ: Դրանք հատուկ դարակներ են, որոնք ծածկվում են կարմիր կտորով և վրան տիկնիկներ շարվում: Այդ տիկնիկները հատուկ տիկնիկներ են, որոնք պահվում են երկար տարիներ, փոխանցվում սերնդե-սերունդ և համարվում ընտանեկան մասունք: Երեխաները դրանցով խաղում են տարին մեկ անգամ՝ տոնակատարության օրը:

Տիկնիկների տոնակատարության ժամանակ ամեն ինչ իրական է թվում՝ և՛ նրանց շրջապատող մթնոլորտը, և՛ հագուստներն ու արդուզարդերը:

Աղջիկները հագցնում են տիկնիկներին գեղեցիկ վգեստներ, սանրում նրանց մազերը փոքրիկ սանրերով, վարդեր ամրացնում նրանց հագուստներին, նստեցնում փոքրիկ, տոնական սեղանի շուրջ, որի վրա դրվում են փոքրիկ բաժակներ, թեյամաններ, ափսեներ: Տիկնիկներին հյուրասիրում են իսկական ուտելիքներով, որը պատրաստում են խաղալիք-խոհանոցում:



*Փայտից պատրաստված կոկեսիներ*

Տիկնիկների տոնը համարվում է աղջիկների տոն: Այդ օրը շնորհավորում են աղջիկներին, նվիրում նրանց խաղալիքներ: Աղջիկների ծնողները հյուրեր են ընդունում, ցույց տալիս իրենց ավանդական տիկնիկները և հյուրասիրում տոնական ուտելիքներով: Այդ օրն անպայման գնում են դեղձի այգիները վբոսանքի՝ հիանալու դեղձենու ծաղիկներով: Դեղձենին ծաղկում է հենց այդ օրերին, այդ պատճառով էլ հաճախ տոնակատարությունն անվանում են ծաղկած դեղձենու տոն: Դեղձենու ծաղիկն էլ համարվում է համերաշխության ու երջանկության խորհրդանշան:

Երկու ամիս և երկու օր անց՝ մայիսի 5-ին, երբ բացվում է իրիս ծաղիկը (որը Ճապոնիայում համարվում է խիզախության և արիության խորհրդանիշ), կատարվում է տղաների տոնը: Նորից ընտանիքի լավագույն սենյակում դրվում է տոկոնաման՝ տիկնիկներով, միայն թե այժմ տիկնիկները լինում են տղաների համար՝ հեքիաթային հսկաներ, փառաբանված ռազմիկներ, լեգենդար հերոսներ: Տղաները խաղում են տիկնիկների հետ, նրանց հագուստներին փոքրիկ թրեր և աղեղներ ամրացնում, նստեցնում խաղալիք ձիերի վրա: Ծնողները նորից հյուրեր են ընդունում և տղաներին նվերներ տալիս: Այդ տոնը կոչվում է նաև իրիսի տոն, քանի որ այդ օրերին բացվում է իրիսը և որովհետև ծաղկի թերթերը սրերի են նման, կոչում են նաև սրերի տոն: Այդ օրերին ամեն մի տղա փայտե սուր է կրում և իրեն լեգենդի հերոս պատկերացնում, բայց իրականում նա մի ուրախ և գեղեցիկ տոնակատարության հերոս է միայն:

Այդ տոների ժամանակ ամեն ինչ լինում է առատ՝ նվերներ, քաղցրավենիք, ուրախ խաղեր: Երեխաները շատ են սիրում խաղալ հեքիաթային չար հրեշի և եղջյուրավոր օնիի կարմիր դիմակներով:

Չար հրեշի դիմակը կրող տղային կարող է հաղթել միայն հեքիաթային հսկա Շոկի Սաման:

Տոնակատարության ավարտից հետո, տիկնիկներին տեղավորում են արկղներում և պահում: Իսկ այնուհետև երեխաները խաղում են տոների օրերին նվեր ստացած խաղալիքներով: Դրանցից ամենասիրվածը կոկեսին է, որը ծնվել է երեք հարյուր տարի առաջ՝ փայտահատի ընտանիքում: «Կոկեսի» նշանակում է «փայտից քանդակված տիկնիկ»: Նա իրենից ներկայացնում է մի փայտե սյուն՝ վրան գլխիկ, առանց թևերի և ոտքերի: Փայտե տիկնիկների վրա վարպետները գեղեցիկ հագուստներ և մազերի սանրվածքներ են նկարում: Նրանք նկարում են նաև կոկեսիի դեմքը և տալիս կանական արտահայտություններ: Տիկնիկներ կան, որ թախծոտ են կամ վշտացած, մյուսները՝ ուրախ, կատակասեր ու աշխույժ, ոմանք էլ մտածկոտ են կամ բարկացած՝ նայած թե տիկնիկի դեմքն ինչպես է նկարված:



Սա էլ Դարումանն է:

Ճապոնացի երեխաների մյուս սիրելի խաղալիքը՝ Դարուման է: Դարումայի հետ կապված լեգենդը ավելի քան հազար չորս հարյուր տարվա պատմություն ունի: Դարուման, իբր, եղել է մի վանական, որ քնել է պատարագի ժամանակ, իսկ հետո, գիտակցելով իր հանցանքը, հուսահատությունից պոկոտել է թարթիչները: Ավանդությունն ասում է, որ թարթիչների ընկած տեղը թեյի թփեր են աճել: Այդ օրվանից ճապոնացիներն իմացել են, որ թեյը վանում է քունը: Նկարիչները միշտ Դարումային պատկերել են նստած և ոտքերը շորով փաթաթած, քանի որ ավանդությունն ասում է, որ նա անդամալույծ է եղել: Այսպիսով, վանականի և թեյի թփի հետ կապված լեգենդից ծնվել է ճապոնացի երեխաների սիրելի խաղալիքներից մեկը՝ շուռ չեկող Դարուման: Դարուման երբեք չի շրջվում, ինչպես էլ որ նրան դնեն: Նա իրենից ներկայացնում է առանց աչքերի, անմարմին մի գլուխ, բայց երեխաները չափազանց սիրում են այդ տիկնիկին և երգում նրա մասին կատակային երգեր. «Դարուման օրորվում է, օրորվում, հիմա կընկնի... Վայ, ընկավ: Ո՜չ, ո՜չ, նա նորից ոտքի կանգնեց»: Մեծահասակները, նույնպես, սիրում են Դարումային և նվիրում միմյանց՝ մաղթելով ցանկությունների իրագործում: Եթե Դարումա նվեր ստացող մարդու ցանկությունն իրականանում է, նա նկարում է Դարումայի մեկ աչքը: Եթե կատարվում է նրա երկրորդ ցանկությունը, այդ մարդը Դարումային նվիրում է երկրորդ աչքը: Այնպես որ, եթե ճապոնացիների տանը տեսնեք աչքեր նկարված Դարումա տիկնիկին, ուրեմն կարելի է շնորհավորել տան տիրոջը՝ նրա ցանկությունների իրագործվելու առթիվ: Իսկ եթե Դարուման մնացել է առանց աչքերի, պետք է մաղթել նրա տիրոջը ցանկությունների հետագա կատարում:



Եղջյուրավոր Օնիի դիմակը

Կոկեսին պատրաստում են փայտից, Դարուման՝ թղթե կանգվածից, իսկ երեխաների մյուս սիրելի խաղալիքը՝ վագրը— բրնձե խմորից: Պարզվում է, որ բրնձից կարելի է ոչ միայն կանակա կերակուրներ, խմիչքներ պատրաստել, այլև՝ խաղալիքներ և կանակա իրեր:



Խաղալիք-վագրը համարվում է հզորության, ուժի խորհրդանշան, և ով ունի այդ խաղալիքից, այլևս չար ուժերից չպետք է վախենա՝ վագրը նրանց կքշի, կոչնչացնի, նա ավելի հզոր է, քան չար ուժերը:

Կենդանի վագրը սարսափելի է, և երեխաները վախենում են

# ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԿՅԱՆՔՈՒՄ



Երբ խոսում ենք երաժըշտության մասին, միշտ չէ, որ պարզ պատկերացնում ենք, թե որքան մեծ տեղ է գրավում նա մեր կյանքում, որքան խորն է մտել մեր կենցաղի մեջ:

Ուրախության պահերին աշխատում ենք լսել զվարճացնող, աշխույժ երաժշտություն, տխուր րոպեներին ամենից ավելի մոտ է մեր հոգուն երաժշտությունն իր սրտաբուխ երանգներով: Երաժշտությունը ընդունակ է մարդկանց ոգևորել, մղել սխրանքների, օգնել կյանքի դժվար պահերին արտահայտելու տոնական հրճվանք և ամենախոր, լիրիկական ապրումներ:

Գոյություն ունի օպերային և թեթև պարային երաժշտություն: Բարդ սիմֆոնիաների կողքին հնչում է մանկական պարզ երգը: Դաշնամուրային, ջութակի և այլ գործիքների համար գրված երաժշտության կողքին հնչում են ժողովրդական սրինգն ու թառը, հարմոնն ու բալալայկան: Իրավացի՞ են արդյոք այն մարդիկ, որոնք ընդունում են միայն մի տեսակի երաժշտությունը, սիրում միայն թեթև, զվարճացնող երգերն ու պարերը և բոլորովին հրաժարվում հասկանալ օպերային և սիմֆոնիկ երաժըշտությունը, կարելի՞ է արդյոք ասել, որ այս տեսակի երաժըշտությունը լավն է, իսկ մյուսը՝ վատ:

Իհարկե, ոչ: Պատկերացրեք, որ գրական անսպառ հարստություններից մարդը ընտրում է կարդալու համար միայն հումորիստական պատմվածքներն ու զվարճախոսությունները, մի կողմ դնելով Րաֆֆու և Մուրացանի պատմական վեպերը, Թումանյանի և Իսահակյանի պոեմները, Տոլստոյի և Չեխովի, Ստենդալի և Բալզակի երկերը: Կամ գեղանկարչության մեջ սիրել միայն ծաղրանկարները, ժխտելով Ռաֆայելին ու Տիցիանին, Թադևոսյանին ու Սարյանին, Ռեպինին ու Այվազովսկուն: Ի՞նչ կարելի է ասել այդպիսի մարդու մասին: Կասենք, որ աղքատ է նրա հոգեկան աշխարհը, սահմանափակ է ճաշակը և որ նա չի հասկանում դասական արվեստի ողջ գեղեցկությունն ու խորությունը: Բեթհովենի ու Մոցարտի, Չայկովսկու ու Ռախմանինովի, Չուխաջյանի ու Սպենդիարյանի և մյուս շատ կոմպոզիտորների ստեղծագործությունների մեջ արտացոլված է ժողովրդի կյանքը, մարդու ներքնաշխարհի ողջ բազմազանությունը: Այն գործերը, որոնք ապրում են տարիներ և դարեր, չկորցնելով իրենց ներգործող ուժը, ընդունված է անվանել կլասիկ՝ դասական, ի տարբերություն այն գործերի, որոնք կարճատև կյանք ունեն, հնչում են մի որոշ ժամանակ և այնուհետև մոռացության տրվում: Եթե որևէ մեկը չի ընկալում, չի հասկանում կլասիկ երաժշտությունը, ապա նա զրկված է ոչ մի բանի հետ չհամեմատվող բարձր գեղարվեստական հաճույքից:

Յուրաքանչյուր մարդ ի վիճակի է հասկանալ արվեստի ամենաբարդ ստեղծագործությունը, եթե այդ ցանկությունն ունի: Դրա համար անհրաժեշտ է ուշադրությամբ մի քանի անգամ լսել երաժշտական որևէ գործ, աշխատել հասկանալ կոմպոզիտորի միտքը, ընկալել երաժշտական կերպարների յուրահատկությունը:

Պետք չէ երաժշտության մեջ որոնել կոնկրետ կերպարների արտացոլում. երաժշտական կերպարները յուրահատուկ են: Եթե երաժշտությունը արտացոլի միայն արտաքին աշխարհի հնչյուններն, ապա նա կդադարի արվեստ լինելուց: Ճիշտ է, հաճախ երաժըշտություն լսելիս, պարզ պատկերացնում ենք անտառի աղմուկը, տերևների շրշյունը, գետակի կարկաչը, թռչունների դայլայլը և այլն: Այդպիսի նկարագրական մոմենտները կարելի է գտնել ծը-



Խաղալիք վագր

նրանից, սակայն խաղալիք-վագրը չափազանց հեզ է ու բարի: Այդ պատճառով էլ խաղալիք-վագրը նման չէ կենդանի վագրի: Նա ներկված է վառ գույներով, բերանը լայն բացած է, երևում են ատամները: Ձեռք տալիս նա շարժում է գլուխը. ասում են, որ դրանով վանում է չար ուժերին:

Ահա թե ինչպիսին են ճապոնացի երեխաների սիրելի խաղալիքները:

*Թարգմ. Ն. ԱՆԱՆՅԱՆԻ*

րագրային երաժշտության մեջ: Հիշենք Գրիգի «Անտառի արքան» և «Առավոտ» պիեսները: Սպենդիարյանի «Երեք արմավենին», Պրոկոֆևի «Պետյան և գայլը» սիմֆոնիկ հեքիաթը կամ Չայկովսկու «Տարվա եղանակները» շարքի պիեսները: Սրանցից յուրաքանչյուրը ինչ-որ կոնկրետ կերպար է նկարագրում երաժըշտությանը հատուկ պայմանական լեզվով, ոչ թե ընդօրինակում է արտաքին աշխարհի հնչյունները: Եթե հասկանալի դառնա այդ յուրահատուկ լեզուն, ապա կհեշտանա ավելի բարդ ստեղծագործությունների ընկալումը: Երբ հնչում է Չայկովսկու 6-րդ սիմֆոնիայի թախծոտ թեման, նա կարող է տարբեր մարդկանց մոտ տարբեր զգացմունքներ առաջացնել, բայց բոլորն էլ երանգավորված կլինեն թախծոտ տրամադրությամբ և ոչ ոքի մոտ նա չի առաջացնի պարելու կամ զվարճանալու ցանկություն: Կամ մի այլ օրինակ՝ կարո՞ղ է արդյոք Ռոսինիի «Սևիլյան սափրիչի» նախերգանքի սրամիտ, ուրախ, կայտառ երաժշտությունը թախիծ առաջացնել: Իսկ երբ հնչում է Խաչատրյանի ջութակի կոնցերտի երաժշտությունը, նա լի է այնպիսի ուժով ու եռանդով, որ չի կարող անտարբեր թողնել ոչ ոքի, հուզում է մարդկանց սրտերը, ոգևորում նրանց:

Պետք է աշխատել հասկանալ այդ յուրահատուկ լեզուն, հասկանալ երաժշտական արտահայտչականության բազմազան միջոցները, ամենանուրբ զգացմունքների արտացոլման նրա հնարավորությունները և այն ժամանակ երաժըշտությունը կդառնա ձեր անբաժանելի ընկերը, առանց որի դժվար է պատկերացնել կյանքը:

ՄԱՐԳԱՐԻՏ ՏԵՐ-ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ



# Ա Վ Ե Տ Ի Ք

***

Ամենալավ կինը մայրն է: Մոր սիրտը մարդկության սիրտն է, տիեզերքի:

***

Աշխարհիս երեսին ամենագեղեցիկը մոր աչքերն են:

***

Հենց միայն մայր ունենալու համար արժե աշխարհ գալ:

***

Մարդը աչքը բանում է աշխարհի վրա իր ծնված վայրում: Այնտեղ նրան խոսում է աշխարհը իր խորհուրդներով, իր հրաշքներով, այնտեղ նա տարվում է, հափշտակվում աշխարհով: Այնտեղ իր մանկության բախտավոր օրերն հյուսվում են շրջապատի իրերի հետ, մարդկանց հետ: Այնտեղ սիրում է նա ու երազում: Եվ երբ գնում է ուրիշ երկրներ՝ առարկայորեն ավելի գեղեցիկ, քան իր աչք բացած երկիրը, նա հոգեբանորեն զգում է՝ իր երկիրը ավելի գեղեցիկ, սըրտախոս, և քանի հասակ է առնում, ավելի խորն է ըզգում, որ իր երկիրը անփոխարինելի գեղեցիկ է, քաղցըր, միակ սիրելին է— ահա թե ինչ է հայրենիքը:

***

Մարդ այնքան մեծ է, ինչքան որ նա ընդունակ է ուրիշներին սիրելու:

Երբ սիրում ես քո ընկերին, ավելի մեծ ես, քան եթե սիրես միայն քեզ, միայն քո եսը: Երբ սիրում ես մի ամբողջ ժողովուրդ, ավելի մեծ ես, քան եթե սիրես միայն ընկերիդ:

Մարդկությունը սիրիր — մարդկության չափ մեծ կլինես:

Տիեզերքը սիրիր— տիեզերքի չափ մեծ կլինես:

# ԻՍԱՀԱԿՅԱՆԻ ԳՐԱՌՈՒՄՆԵՐԻՑ

Սիրիր և կմեծանաս, և կխորանաս: Քո սիրտը կըհարստանա և կդառնա քո և ուրիշների երջանկության աղբյուր հորդառատ:



Սուրբ է հայրենիքը, նա մեր հացն է, մայրական գիրկ, մեր մանկությունն է նա, մեր պապերի գերեզմանը և մեր մանուկների օրորոցը: Նա մեր տարեգիրքն է, մեր հին ու նոր քնարը:

Նա հայրական տան ծուխն է, որ մեր իղձանքն ու վիշտը տանում է աստղերին: Նվիրական է նա, որովհետև մեկ գրկող բազուկներն ու սիրող սրտերը հող են դարձել այնտեղ:



Մարդը պիտի Պրոմեթեոսի պես լինի՝ աշխարհը վերաստեղծե, փոխե, ծառա դարձնի իրեն, իր կյանքի ու պահանջների հագեցման համար:

Մարդկային նպատակն է առաջադիմությունը, պրոգրեսը, որ պիտի օգտագործվի մարդկության համար: Մարդը, այսպիսով, աստծուն է նմանվում՝ դառնալով արարիչ:



Բոլոր կենդանիները, ամենավայրագներն իսկ, մեղմանում են փաղաքշանքի, գուրգուրանքի շնորհիվ: Սերը սեր է վարթնեցնում, չարությունը՝ չարություն:



Ծաղիկներ կան, որ մանկության երազի պես են բուրում, ուղղակի անցած մանկությունն են հիշեցնում— գարուն, պայծառ արև, բարի հայր ու մայր, կայտառ քույր ու եղբայրներ, և անվերջ խաղե՜ր, խաղե՜ր, հայրենի գետակի ափերին:



Առաջ, պատանի և երիտասարդ ժամանակս, երբ լսում էի արտույտի երգը ցորենի արտում— ոգևորվում էի, իղձվում, ճմլում էր սիրտս և ապագայի ոսկի երազներ հյուսում, երջանկության երազներ: Իսկ երբ հիմա եմ լսում, տխրում եմ և միայն անցյալն եմ հիշում, վերապրում:



Միջագետքի արաբների մեջ մի ավանդություն կա, թե Բաբելոնի աշտարակը 70 հայ ճարտարապետներ են շինել: Սա խոսում է հայ ժողովրդի համբավի մասին: Արաբների մտայնության մեջ մտել է այն փաստը, թե հայերը կառուցողներ են:

*Այս նյութերը Վարպետի ձեռագրերից արտագրել ու մեր խմբագրությանն է տրամադրել նրա եղբորորդի Արաս Իսահակյանը:*

## ՍԱՐԻՑ ԻՋՆՈՒՄ Է ԱՌՈՒՆ

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

Սարից իջնում է առուն
Ծիծաղով իր թաց,
Իր ափերին՝ ոսկեհուր
Ծաղիկներ թողած:

Թողած երկինք մի մաքուր,
Մի շաղոտ կածան,
Եվ ակունքին իր հենված
Մի լայն ծիածան:

Իջնում է՝ իր ափերին
Թողած խինդ ու երգ,
Թեև գիտի, որ կրկին
Չի դառնալուետ:

# ՓՈՔՐԻԿ ԲԱՆԱՍՏԵՂԾ ԿՀՈԱՆ



Հայֆոնից ոչ հեռու մի գյուղում է ապրում փոքրիկ վիետնամցի Թրան Դանգ Կհոան: Երբ նրա մայրը գիշերները աշխատում է ամերիկյան ռմբակոծիչների կողմից ավերված փողոցների վերանորոգման վրա, իսկ ցերեկները չարչարվում է դաշտում, իննամյա Կհոան այդ ժամանակ բրինձ է աղում, ճաշ պատրաստում, բակը մաքրում, փոքրիկ քրոջը խնամում:

Երեկոները նա քրոջ համար իր հորինած բանաստեղծություններով օրորոցային է երգում: Քույրիկն արդեն անգիր է սովորել նրա բանաստեղծությունները և հաճախ արտասանում է իր ընկերուհիների մոտ: Բոլորին էլ շատ են դուր գալիս այդ ոտանավորները: Այդ բանաստեղծությունները տպագրվել են մանկական ամսագրում: Կհոայի բանաստեղծությունները հավանում են ոչ միայն փոքրիկները, այլև մեծերը: «Կարմրավզիկի երգը», «Փոթորիկ», «Ես ձեզ եմ պատմում այս հեքիաթը», «Ինչո՞ւ չես վերադառնում, իմ դեղին շնիկ» և ուրիշ երգեր, մեծ տարածում են գտել:

1968 թվականին Թրան Դանգ Կհոայի բանաստեղծությունները մտան վիետնամական պոեզիայի պաշտոնական անթոլոգիայի մեջ:

---

# ՀԻԵՐՈԳԼԻՖՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Մարդկության պատմության մեջ ամենահին գրերը հիերոգլիֆներն են: Եգիպտացիները թողել են հսկայական քանակությամբ հիերոգլիֆներ: Հիերոգլիֆները նկարներ են, որոնք պատկերում են ինչ-որ առարկաներ կամ էլ կերպարանքներ: Յուրաքանչյուր պատկեր որոշակի միտք է արտահայտում: Օրինակ, եգիպտացիները արևը պատկերում էին գծիկ ունեցող շրջանագծի միջոցով, մարդկային կերպարանքը նշանակում էր տղամարդ, իսկ շրջազգեստով պատկերը՝ կին:*

*Հիերոգլիֆները շատ բարդ են և լրիվ բացահայտված չեն:*

*Առաջին անգամ XVII դարում վանահայր Աֆանասի Կիրհերը փորձեց կարդալ Հռոմի փողոցներից մեկը զարդարող կոթողի վրայի եգիպտական հիերոգլիֆները: Բայց չկարողացավ, նա հիերոգլիֆները սխալ վերծանեց:*

*Հետագայում, XIX դարի սկզբին, ֆրանսիացի գիտնական ժան Ֆրանսուա Շամպոլյոնը առաջինը կարդաց հիերոգլիֆները: Ինը տարեկան Շամպոլյոնը արդեն գիտեր հունարեն և լատիներեն, իսկ հետո սովորեց նաև հին եբրայերենը: Տասնվեցամյա պատանին գրեց «Եգիպտոսը փարավոնների ժամանակ» աշխատությունը:*

*1822 թվականի սեպտեմբերի 14-ին նա վերծանեց մի քանի հիերոգլիֆներ և ներխուժելով իր եղբոր առանձնասենյակը, բացականչեց.*

*— Այժմ ամե՛ն ինչ իմ ձեռքում է:*

*Եվ հուզմունքից ուշագնաց ընկավ հատակին:*



*Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ*

# ՔԱՐԱՅՐԻ ՄԱՐԴԸ ՆԿԱՐՈՒՄ Է



ռչակավոր իսպանացի հնագետ Մարսելինո Սաուտուոլան իր սիրելի աղջկա համար ոչինչ չէր խնայում: Երբ աղջիկը իմացավ, որ հայրը պատրաստվում է գնալ մոտակա քարանձավը, որը պատահաբար հայտնաբերել էր մի որսորդ, նա խնդրեց հորը իրեն էլ տանել:

Քարայրի կենտրոնական դահլիճից, տարբեր ուղղություններով, անցումներ կային: Սաուտուոլան աղջկա ձեռքը վառվող մի ջահ տվեց ու կարգադրեց նրան չշարժվել տեղից, իսկ ինքը վառեց մի ուրիշ ջահ ու անհետացավ կողքի միջանցքներից մեկում: Երեխայի սարսափած ճիչը ստիպեց նրան իսկույն վերադառնալ: Աղջիկը անկյունում կծկված մատնացույց էր անում դիմացի պատը: Հնագետը տեսավ ժայռոտ մակերեսին պատկերված մի կատաղած վայրի ցուլ: Ցուլի մոտ նկարված էին ուրիշ կենդանիներ՝ կարմիր ձիեր, վարազներ, եղնիկներ: Հետագայում հետազոտողները այդ տիպի մոտ երեք հարյուր պատկերներ գտան, որոնք ստեղծվել էին գեղարվեստական մեծ վարպետությամբ: Գիտնականները որոշեցին, որ դրանք արվել են 16 հազար տարի առաջ: Եվ այսպես, 1876 թվին, Ալտամիրա քարայրում փոքրիկ աղջիկը նախամարդու ստեղծագործություններ հայտնաբերեց:



Ինչպե՞ս ստեղծվեցին այդ սկզբնական նկարները մարդկության կուլտուրայի պատմության մեջ:

«Դա զվարճալիք էր, խաղ»,— ասում էին առաջին ուսումնասիրողները: Սակայն որոշ գիտնականների այս պատասխանը չէր գոհացնում:



Քարայրի նկարները նախամարդուց պահանջում էին ուժերի մեծ լարում և շատ ժամանակ: «Նույնիսկ դժվար է պատկերացնել, որ ծանր, վտանգներով լի կյանքի պայմաններում, նախամարդիկ այդքան ջանք են գործադրել, ստեղծելու համար այն, ինչ ոչ մի օգուտ չի բերում»,— առարկում էին մյուս գիտնականները: Բացի դրանից, նրանք հաստատեցին, որ նկարները գտնըվում են քարայրների խորքերում, նախամարդու բնակելի վայրերից հեռու: Եթե այդ նկարները որպես զարդ լինեին, ապա պետք է գտնըվեին քարայրի բնակելի մասում:





Վեճի մեջ մտան ազգագրության մասնագետները: Նրանց հայտնի էր, որ մինչև օրս էլ նախնադարյան ցեղերի մեջ տարածված է մի սնահավատություն, իբր, ով տիրում է կենդանի էակի նկարին, մոգական իշխանություն է ձեռք բերում այդ էակի վրա:

«Այստեղ մենք նման դեպքի հետ գործ ունենք,— հայտարարեցին ազգագրագետները:— Քարայրների նկարները մոգական արարողությունների հետևանքներ են: Նախամարդու համար որսը ապրելու միջոց էր: Դրանով էր նա կերակրվում: Պատկերելով տարբեր կենդանիների, մարդը հավատում էր, որ կախարդանքի օգնությամբ իշխանություն է ձեռք բերում կենդանիների վրա և որսը հաջող է լինում: Այդ հավատը նրան հերոսություն և ինքնավստահություն էր ներշնչում, երբ նա հետապնդում էր ուժեղ ու վտանգավոր կենդանիների»:





Անկասկած դա այդպես էր: Առաջին նկարները ո՛չ խաղ էին և ո՛չ էլ զվարճալիք: Դրանք զարդարանքի համար չէին ստեղծվում: Հազարավոր տարիներ են անցել, մինչև որ մարդու գիտակցության մեջ առկայծել է գեղեցիկը զգալու միտքը: Սակայն այդ

# ՄԻԱՅՆԱԿ ԴԵԼՖԻՆԸ

*ԱՂԱՍԻ ԱՅՎԱԶՅԱՆ*

Որ կողմը նայում էի՝ ծով էր, և ես մենակ էի: Երբ նավ էի տեսնում, մոտենում էի նրան, ետևից լողում, զվարճացնում էի և՛ ինձ, և՛ նավի ուղևորներին: Հետո նրանք հոգնում էին ինձանից կամ գնում էին ճաշելու, և տախտակամածի վրա մարդ չէր մնում: Մի նավից մյուսն էի լողում: Հաճախ ընտրում էի նավերից ամենագեղեցիկը և ընկնում ետևից:

Մի անգամ, երբ այդպես թռչկոտելով լողում էի նավի ետևից և ամբողջ տախտակամածը ինձ էր նայում, ես նկատեցի մի փոքրիկ տղայի. սև, խոշոր աչքեր ուներ գունատ դեմքի վրա: Տղան ծնոտը բազրիքի վրա էր դրել և ինձ էր նայում: Ինչպե՜ս էր նայում... Նա երկար նայում էր, հետո հացի կտորներ էր գցում ինձ: Ես թռչում էի, վերցնում, նա ուրախանում էր: Մոտենում էր հորը, ինչ-որ բան հարցնում ու նորից նետում ինձ ուտելիք, նույնիսկ սմբուկի պահածո: Ես տուփը վերցրի բերանս ու լողացի նրա ետևից: Ինձ պետք չէր այդ տուփը: Ես սմբուկ չեմ սիրում: Եվ հետո, եթե նույնիսկ սիրեի, ինչպե՞ս պետք է բացեի թիթեղյա տուփը: Ցնծում էր ամբողջ տախտակամածը: Եվ բոլորից շատ ուրախանում ու հպարտանում էր փոքրիկ տղան: Չէ՞ որ բոլորը գիտեին, որ դա նրա գցած տուփն էր: Հետո ճաշի ժամը դարձավ և ուղևորները գնացին ճաշելու: Տղայի հայրը նույնպես գնաց ճաշելու. նա տղային էլ, ձեռքից քաշելով, իր հետ տարավ: Ես մնացի ծովում մենակ ու լողում էի ամայացած նավի ետևից: Շատ սիրեցի տղային ու հեռանալ չէի ուզում: Ու հանկարծ նա վազելով եկավ: Ետևից երևաց հայրը, ինչ-որ բան էր ասում, բայց տղան համառ էր: Նա եկավ ու կանգնեց բազրիքի մոտ: Ես ավելի ոգևորվեցի: Էլ ի՜նչ ասես չէի անում նրա համար. վեր էի ցատկում, լրիվ դուրս գալիս, պտտվում օդի մեջ, գլուխկոնծի տալիս: Տղայի աչքերը մաքուր էին, և նրանք նայում էին սիրով:

Ծովում միայն երկուսով էինք:

— Արա՜մ...— գոռաց տղան:

Ես ավելի մոտեցա նավին:

— Իմ անունը Արա՜մ է,— կրկին կանչեց նա:

— Իսկ իմ անունը Պոչո՜ է,— ճչացի ես:

— Դու լավն ես,— ասաց Արամը:

— Դու էլ լավն ես,— ասացի ես:

Հետո գիշեր եղավ ու մարդիկ գնացին քնելու:

— Չգնա՜ս...— ասաց Արամը:

— Չէ՜...— ասացի ես:

Գիշերը մութ էր: Միայն նավի լույսերն էին շարժվում ծովի վրա: Եվ ես հետևում էի այդ լույսերին: Մեկ-մեկ ուրիշ նավ էր հանդիպում ծովում, ու սուլում էին իրար:

Ամբողջ գիշեր ես լողում էի մենակ ու սպասում լուսանալուն: Ու շատ բան էի մտածում գիշերվա մեջ. մտածում էի, թե ինչ լավ է, երբ ընկեր ունես: Եվ ընդհանրապես ինչ լավ բան է հավատարմությունը: Ու թեպետ հոգնել էի, բայց քնած լողում էի նավի ետևից. որպեսզի հավատարիմ մնամ իմ ընկերոջը՝ Արամին:

Դեռ լույսը չէր բացվել, երբ հեռվում երևացին Բաթումի լապտերները: Առաջինը տախտակամած դուրս եկավ, աչքերը տրորելով, Արամը.

— Բարի լույս,— ասաց նա:

— Բարի լույս,— ասացի ես:

— Շա՞տ ես հոգնել,— հարցրեց Արամը:

— Ո՛չ,— ասացի ես: Ինչու տխրեցնեմ նրան: Հետո էլ, լավ չէ, երբ քո հոգնածությունն ու տրամադրությունը ուրիշի վզին ես փաթաթում:

Նավը խարիսխ գցեց:

Արամին մոտեցավ հայրը և բռնեց նրա ձեռքը: Արամի աչքերը լցվեցին:

---

նկարները հսկայական նշանակություն ունեին նախնադարյան մարդու հոգեկան կարգացման համար: Նկարողը դրանց մեջ ներդնում էր իր կյանքի ողջ փորձը, նա արդեն այնքան լավ գիտեր կենդանիներին, որ կարող էր տարբերել Լականը ոչ էականից: Նա կարող էր զարմանալի ճշտությամբ պատկերել ոչ միայն նրանց կեցվածքը, այլև բնորոշ դիրքը:

Մոգական արարողություններից բացի, նախնադարյան մարդու նկարը սկսում է նոր դեր կատարել: Պատկերվելով մի կտոր կեղևի կամ կաշվի վրա, այն դառնում է հաղորդակցության միջոց: Հետզհետե այդ տիպի պատկերումը պարզվում էր, աճում էր դրանց թիվը, դրանց տեղադրումը այս կամ այն ձևով սկսեց ենթարկվել ինչ-որ սիստեմի: Նկարները վերածվեցին գրերի:

Եվ այսպես, նկարի շնորհիվ, մարդկությունը հասավ մեծագույն հայտնագործության՝ մարդիկ սկզբից սովորեցին նկարել, հետո գրել:

Հայաստանում, տարբեր ժամանակներ, հայտնաբերվել են հարյուրավոր ժայռապատկեր-ժայռագրեր, որոնք արժանացել են ոչ միայն մասնագետների, այլև հետաքրքրվող լայն շրջանների ուշադրությանը:

*Նկ. ՀՐԱՉԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*



# «ՑԱՆԿԱՄ ՏԵՍՆԵԼ»

ՇԱՐՆ ՎԱՐԴՅԱՆ

— Ես գնալու եմ Երևան,— ասաց նա:— Արի՛, կգա՞ս:

— Չեմ կարող,— ասացի ես:— Ծովը վերջացավ, ես այլևս չեմ կարող գալ քեզ հետ:

— Մենք գնում ենք տոմս առնելու, ժամը երկուսին նորից կգամ հրաժեշտ տալու: Սպասիր: Լա՞վ:

— Լավ,— ասացի ես:

Անհամբեր սպասում էի նրան: Հեռանում էի մի քիչ այն կողմ ու նորից վերադառնում նավամատույց, վեր էի թռչում, գլուխս դուրս հանում և նայում նավամատույցի մեծ ժամացույցին: Իսկ գիտե՞ք ինչու են ծովափնյա ժամացույցները մեծ: Նրանք մեկ համար են շինված, որ ծովից տեսնենք: Երբ սլաքը երկուսից արդեն անցնում էր, սիրտս ճմլվեց: Վախեցա, որ Արամին այլևս չեմ տեսնի: Ու հանկարծ, վազելով, երևաց նա:

— Ես արդեն գնում եմ,— տոմսը ցույց տալով՝ տխուր ասաց Արամը:

— Էլի կտեսնվե՞նք,— հարցրեցի ես, ու աչքերիցս արցունքներ թափվեցին: Ինչ լավ է, որ շուրջս ջուր է և ոչ ոք չի նկատի իմ թաց այտերը:

Արամը ձեռքը թափահարեց և կամաց-կամաց հեռացավ: Ես շատ կուզենայի գնալ նրա ետևից և մինչև կյանքիս վերջը լինել նրա հետ: Բայց ծովը վերջացել էր և մենք պետք է բաժանվեինք: Ես երկար նայում էի նրա ետևից: Երբ նա կորավ հայացքիցս, ես էլի երկար սպասում էի, մինչև գնացքը կսուլեր և նրա ձայնը կկորչեր հեռվում:

Մթնում էր: Շուրջս ցրտեց: Ես ընկղմվեցի ծովի մեջ ու գնացի, գնացի... Եվ զգացի, որ ես երբեք չեմ կարողանա նրա ընկերը լինել, որ ծովի ափը վերջ է դնում մեր մտերմությանը: Ես միայն երազել կարող եմ նրա մասին: Եվ ոչընչով չի կարելի օգնել: Այդպես է աշխարհը...




*Հովհաննես Իլանկյոզյանը, երբ դեռևս յոթ թե ութ տարեկան մի մանկիկ, հարևան արգենտինացի երեխաների հետ խաղում էր բակում, հայրը դռան առաջ, ցածլիկ աթոռին նստած ծխում էր ու արտաշնչում ծխի քուլաները, միևնույն ժամանակ աչք պահելով որդու վրա:*

*Հովհաննեսը նրբակազմ, փխրուն մի տղա էր: Նրա երկար թարթիչներով խոշոր, արտահայտիչ աչքերում միշտ մի ծանր տխրություն կար նստած, նույնիսկ խաղալիս, նույնիսկ վազվզելիս:*

*Հայրը թեև չէր ուզում, որ մարդիկ, հատկապես Հովհաննեսը, նկատի այդ բանը, ամեն անգամ, երբ տանն էր լինում, իսկ տղան խաղում էր բակում, գնում նստում էր դռան առաջ և հսկում որդու խաղը: Նրան թվում էր, որ իր որդին այդ մեծ ու լայնածավալ երկրում՝ Արգենտինայում որբ է, անօգնական, և տեղացի երեխաները ամեն րոպե կարող են ծեծել նրան: Մինչդեռ ընդհակառակը, բոլորը սիրում էին Հովհաննեսին, որին Խուան էին անվանում: Խուանը բարեհամբույր, խաղաղասեր բնավորություն ուներ, հեզ էր և զգայուն:*

*— Խուա՛ն, Խուա՛ն, գնդակը գցի՛ր, ա՛յս կողմ գըցիր,— բղավում էին երեխաները այս ու այն կողմից, և Խուանն ինքնամոռաց վազվզում էր գնդակը ձեռքին:*

*— Խուա՛ն,— քրթմնջաց հայրը,— Խուան:— Եվ նա նորից սկսեց խորհրդածել որդու անվան մասին:— Հովհաննեսը ինչո՞ւ, ինչպե՞ս Խուան դարձավ, հիմա բոլորը, բացի իրենից ու մորից, նրան Խուան են անվանում:*

*Թեև տղայի մկրտության անունը Հովհաննես էր, բայց պաշտոնապես, բոլոր փաստաթղթերում նա Խուան էր: Հերիք չէր Իլանկյոզյանը, հիմա էլ Խուան:*

*Նա դժգոհ էր իր ազգանունից, որը նշանակում էր օձի աչք ունեցող:*

*Նա խորին մի խանդաղատանքով նայեց որդու գեղեցիկ, բարի ու թախծոտ աչքերին, որոնք ոչ մի առընչություն չունեին օձի աչքերի հետ և արդեն զայրացած խոսեց ինքն իր հետ.*

*— Չեմ հասկնար, ո՞վ փակցուցած է այդ մականունը մեր տոհմին: Գոնե հայրս ողջ ըլլար և ինծի բացատրեր: Այդ երկրին մեջ ի՞նչ մականուններ ըսես, որ չեն տվեր մարդոց՝ Սարմսաքյան (Սխտորյան), Տիլսիզյան (լեզու չունեցող), Քոլսուզյան (թև չունեցող):*

*«Այդ երկիրը» Կիլիկիան էր. նա Տարսոն քաղաքից էր:*

— Թերևս իրավունք ունեին մարդիկ այդ անունները տալու մեզի, չէ՞ որ ո՛չ խոսելու և ո՛չ գործելու իրավունք ունեինք,— մտածեց նա,— բայց լավ քաղաք էր մեր քաղաքը:

Նա անսահման մի կարոտ զգաց իր ծննդավայրի հանդեպ, նրա հայացքի դիմաց փռվեցին նրան շրջապատող այգեստանները, հիշեց այն եկեղեցին, որն ասում էին, թե Օշին թագավորն է կառուցել, հիշեց մորը, որի ձեռքից բռնած գնում էր այդ եկեղեցին, և հանկարծ նրա շրթերի վրա խաղաց ծանոթ, բայց վաղուց չերգված մի երգ.

*«Երբ որ բացվին դռներն հուսո...»*

Նախ երգում էր քթի տակ, ցածր, իր համար, ու չիմացավ, թե ինչպես բարձրացավ ձայնը և տարածվեց շրջապատում.

*«Ցանկամ տեսնել զիմ Կիլիկիա,*
*Աշխարհ, որ ինձ ետուր արև»:*

— Հայրի՛կ, ի՞նչ երգ է երգածդ:

Հովհաննեսը եկել նստել էր հոր կողքին և կլանված լսել երգը:

Հայրը նկատեց, որ որդու աչքերում ավելի էր թանձրացել թախիծը, ասես արցունք էր դարձել և ջղագրգիռ ասաց.

— Գնա խաղա՛, ինչո՞ւ եկար քովս: Ասիկա իմ երգըս է, իմ կարոտի երգս:

— Նորեն երգե,— պնդեց տղան,— շատ կխնդրեմ, նորեն երգե, շատ սիրեցի այդ երգը:

Եվ հայրը երգեց, երգեց այդ օրը, երգեց հաջորդ օրը, երգեց ամեն անգամ, երբ կարոտեց իր ծննդավայրը, ամեն անգամ, երբ իրեն որբ ու մենակ զգաց այդ ընդարձակ օտար աշխարհում:

Եվ մի օր էլ նկատեց, որ տղան բակում նստած երգում է այդ երգը.

*«Ցանկամ տեսնել...»*

Երգում է իրեն նման, բառերը տխրորեն ծոր տալով, ասես արտասվելով: Եվ հասկացավ, որ կարոտը բույն է դրել որդու հոգում նույնպես: Այդ մտքից նա խաղաղվեց, ասես Խուան անունը նորից դարձավ Հովհաննես, ասես այդ օտար միջավայրը իրեն վերադարձրեց իր որդուն.

*«Ցանկամ տեսնել...»*

Ու մի օր, այլևս չկարողանալով հուզումը զսպել, գրկեց որդու գլուխը իր հայրական կոշտ ափերի մեջ և ասաց.

— Կղրկեմ, տղա՛ս, երբ մեծնաս, քեզի հայրենիք կղրկեմ, որպեսզի կարոտդ առնես:

Եվ նրան պատմեց Արարատի, նրա հայացքի դիմաց ծաղկող Սովետական Հայաստանի, Երևանի ու Սևանի մասին:

Այնուհետև, ամեն անգամ, որ Հովհաննեսը «Ցանկամ տեսնել» էր երգում, նրա հայացքի դիմաց Արարատն էր կանգնում:

## ՀԱՅՐԵՆԻՔՈՒՄ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԻԼԱՆԿՅՈԶՅԱՆ

Աստղոտ գիշերներ՝ օրվա պես պայծառ:
Ծով են լույսերը մեր Երևանի,
Նայելով դեպի Ծիծեռնակաբերդ,
Հրապարակն է ժպտում Լենինի:
Աստղոտ գիշերներ և արշալույսներ:
Մի աղջիկ ահա՝ ժպիտը դեմքին,
Նա իր երազն է ափերից օտար
Բերել ու պարզել մայր հայրենիքին:
Դատարկ վանքերի
Պատերին քարե,
Մամռած դարերի աղոթքն է սառել:
Իսկ փողոցներում աղմուկ ու արև,
Գգվանքներ սիրո,
Հայրենի բառեր:
Զնգուն ջրերի ծիծաղում զվարթ,
Իրար են փարվել ձմեռ ու գարուն,
Եվ քարն է ժպտում, որ իր կարծրությամբ
Հավերժող հոգու խորհուրդն է պահում:

Նա սկսեց դպրոց հաճախել: Բուենոս-Այրեսում 40—50.000 հայություն է ապրում, բայց ընդամենը հինգ հայկական դպրոց կա: Հայ երեխաների մեծ մասը օտար դպրոց է հաճախում: Հովհաննես-Խուանը հայկական դպրոց գնաց: Դպրոցը հեռու էր: Մեծ քաղաք է Բուենոս-Այրեսը: Հովհաննեսը ամեն օր ավտոբուսով երկու ժամվա ճանապարհ էր կտրում, մինչև հասնում էր դպրոց և նույնքան ժամանակ էլ ծախսում էր վերադարձի վրա:

Այստեղ՝ ս. Գրիգոր Լուսավորիչ կրթական հաստատության միջնակարգ այս դպրոցում, նա ծանոթացավ իր լավ դասընկեր-դասընկերուհիներին՝ Դիանա Հովակիմյանին, Էդվարդո Օհանյանին, Զապել Գույումճյանին, Իրինե Նալբանդյանին, նրանց հետ հայերեն խոսեց, նրանց հետ հայ բանաստեղծների գործերը արտասանեց, նրանց հետ երազեց, նրանց հետ Կոմիտաս երգեց, նրանց հետ կարոտեց հայրենիքը.

*«Ցանկամ տեսնել...»*

Եվ ապա, ինքն էլ սկսեց բանաստեղծություններ գրել, գրել կարոտի, իր ունեցած բայց չտեսած հայրենիքի ու սիրո մասին...

Մի անգամ Բուենոս-Այրեսի տարբեր թաղերից այս դպրոցում համախմբված իններորդ դասարանի աշակերտները սկսեցին բարձրաձայն երազել դպրոցն ավարտելուց հետո իրենց անելիքների մասին:

— Ո՞վ գիտե ուր պիտի երթա մեզմե ամեն մեկը, ինչ ճակատագիր կը սպասե մեզի,— հառաչեց Նշանձ, խոշոր աչքերով Իրինե Նալբանդյանը:

— Եթե հոս, Արգենտինա ըլլանք, ամեն տարի մեր շրջանավարտության տարեդարձին հավաքվինք,— առաջարկեց Դիանան,— այսպես զիրար չենք մոռնար:

Նա շատ զգայուն ու բարի մի աղջիկ էր: Ընկերները նրան սիրում էին իր նվիրվածության, ազնվության համար:

Դիանայի աչքերից սկսեցին արցունքներ հոսել:

— Ի՞նչ պատահեցավ քեզի, դեռ երկու տարի ունինք մինչև ավարտենք դպրոցը: Դեռ բաժնված չունինք իրարմե...— նրան մխիթարեց Էդվարդոն:

— Չեմ գիտեր,— արցունքները սրբելով և ջանալով ժպտալ ասաց Դիանան,— մեր ծնողները կապրեին իրենց նախնիքներու երկրին մեջ, բայց հիմա ցիրուցան եղած են հոս-հոն և միշտ տխուր են, միշտ կհիշեն իրենց հայրենիքը: Մենք թեև հոս ծնած ենք, այս հյուրընկալ երկրին մեջ, բայց դարձյալ տխուր ենք: Ասիկա մեր երկիրը չէ, ատոր համար էլ կապված չենք զգար անոր, կրնանք վաղը ուրիշ տեղ մը երթալ, հետո՝ ուրիշ տեղ մը: Ապագան շատ անորոշ կթվի ինծի...

Հովհաննես-Խուանը լուռ լսում էր ընկերներին: Նրա աչքերում նորից թանձրացել էր թախիծը, նրա հայացքի դիմաց նորից Արարատն էր.

— Երբ շրջանավարտ ըլլամ, հայրս խոստացել է զիս Հայաստան պտույտի ղրկել:

— Հայաստա՞ն:

Հայաստանը նրանց համար յոթ սարերի, յոթ ծովերի ետևում գտնվող մի երկիր էր, հեռու, անհասանելի: Նրա մասին գրքերում էին կարդացել, նրա մասին իրենց պատմել էին իրենց ուսուցիչները:

— Ճի՞շտ կըսես, որ պիտի երթաս:

— Ինչպե՞ս պիտի երթաս:

Եվ մինչ Հովհաննեսը պատմում էր իր ծրագրերի մասին, հանկարծ բոլորն էլ գլխի ընկան, որ Հայաստանը բոլորովին էլ անհասանելի չէ, կարող ես նստել ինքնաթիռ ու գնալ, գլխի ընկան, որ իրենք այսքան ժամանակ մտահոգված են իրենց ապագայով, որովհետև Հայաստանը համարել են իրենցից դուրս մի բան, թեև սիրելի, թեև ցանկալի...

Եվ ամբողջ երկու տարի այս պատանիները սկսեցին ապրել Հայաստանով: Խնայողություն էին անում, իրենց զրկում մի շարք հաճույքներից, հանդեսներ տալիս դրամ հավաքում, որպեսզի կարողանան Հայաստան այցելել:

— Մենք այս դպրոցի անդրանիկ շրջանավարտները պիտի ըլլանք, մեզմով թող սկսի դեպի հայրենիք ուխտագնացությունը, որպեսզի ատիկա ավանդույթ դառնա, մեզմե հետո եկողներն ալ մեզի հետևին:

— Արարատը ո՞ւր է:

Սա առաջին հարցն էր, որ տվեց Հովհաննես Իլանկյոզյանը ինքնաթիռից իջնելիս:

1970 թվականի հունվարի մեկն էր, ցուրտ ու մառախլապատ մի օր, Արարատը հազիվ էր ուրվագծվում ամպի վարագույրի ետևում:

Նրանք հինգով՝ Հովհաննես Իլանկյոզյանը, Իրինե Նալբանդյանը, Էդվարդո Օհանյանը, Զապել Գույում-



Ձախից աջ՝ Դիանա Հովակիմյան, Հովհաննես Իլանկյոզյան, Իրինե Նալբանդյան, Էդվարդո Օհանյան, Զապել Գույումճյան:

Լուսանկարը՝ Պ. ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

ճյանն ու Դիանա Հովակիմյանը նայեցին Արարատին ու խոնարհեցին իրենց գլուխները: Այնքան ջերմեռանդություն ու երկյուղածություն կար նրանց աչքերում, կեցվածքում: Հանկարծ Դիանան հեծկլտաց, մյուսները փակեցին իրենց աչքերը...

Հետո լուռ շարժվեցին դեպի իրենց սպասող ավտոբուսը:

Նրանք տասներկու օր մնացին հայրենիքում, տասներկու օր վայելեցին հայրենի ժողովրդի և իրենց հասակակիցների հյուրընկալությունը, սերը, գուրգուրանքը:

Դիանան, իրեն հատուկ անմիջականությամբ խոստովանեց.

— Երբ Հայաստան պիտի գայինք, որոշ մարդիկ ուզեցին մեր մտքերը պղտորել: «Հայաստանը ցուրտ ու անհյուրընկալ է, դուք հոն պիտի մսիք»,— կըսեին մեզի: Ճիշտ է, որ մենք շատ տաք երկրե մը կուգանք, երբ Բուենոս-Այրեսը թողուցինք, 33 աստիճան տաք էր հոն, բայց Հայաստանի մեջ երբեք չմսեցանք, ընդհակառակը, մեր սիրտերը ջերմացան:

Նույնիսկ, երբ պատճառ բերելով ցուրտը, նրանց չէին ուզում Սևան տանել, նրանք միահամուռ պնդում էին.

— Հոգ չէ՛, հոգ չէ՛, մենք ցուրտեն չենք վախնար, անպայման տեսնելու ենք Սևանը:

Եվ նրանք շատ բան տեսան հայրենիքում: Օտար ափերում իրենց ժողովրդին ու հայրենիքին հավատարիմ մնալու ուխտը վերանորոգեցին Մեսրոպ Մաշտոցի գերեզմանի առջև ծնկաչոք, Գեղարդի վիմափոր տաճարում հիացան իրենց նախնիների ճարտարապետական հանճարով, Երևանը հայ ժողովրդի վերածննդի կենսահաստատ ցոլքերով լուսավորեց նրանց հոգիները, իսկ դպրոցականների հետ հանդիպումները, գրկախառնումները այնպիսի ջերմությամբ լցրին նրանց հոգիները, որ Իրինե Նալբանդյանը արցունքախառն աչքերով ասաց.

— Կուզեի, շատ կուզեի, որ պարմանական այս ձեռքերս շատ երկար ըլլային և ես կարողանայի գրկել, կուրծքիս սեղմել Հայաստանի բոլոր դպրոցականները, ամբողջ պատանեկությունը: Գիտցեք, որ թեև հեռավոր երկրի մը մեջ կապրինք, բայց ձեզի հետ ենք, հայ ժողովուրդի անբաժան մեկ մասն ենք:

Իսկ Հովհաննես Իլանկյոզյանը, մի տեսակ քաշվելով, ինձ տվեց մի բանաստեղծություն և ասաց.

— Երևանի մեջ գրեցի: Իսպաներեն է, առայժմ հայերենս այնքան ուժեղ չէ դեռ, բայց վստահ եղեք պիտի ուժեղանա: Մեսրոպ Մաշտոցին երդում տվի:

Եվ պատանի ուխտագնացները մեկնեցին՝ իրենց հոգում ներծծած հայոց աշխարհի կախարդական ուժը, որը նրանց պիտի օգնի օտար ափերում միշտ լինելու հայրենիքի հետ, հայրենիքի կողքին:

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ



Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 3 մարտ 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



„Пионер“ на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 05397: Պատվեր՝ 124: Տպաքանակ՝ 70000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 12/III, 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:
Գինը՝ 10 կ.

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԴԵՊՔԵՐ ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ

* * *

Երբ Արթուր Ռուբինշտեյնին հարցնում են՝ արդյո՞ք դաշնակահարը ամեն օր պի՛տի պարապի, պատասխանում է.

— Եթե ես մի օր բաց թողնեմ, իսկույն ինքս կզգամ, երկու օր՝ կզգան մատներս, երեք օր՝ արդեն հասարակությունը կզգա:



* * *



*Երբ փոքրիկ Շոպենը առաջին անգամ պետք է ելույթ ունենար հասարակության առջև, նրան երկար ու խնամքով հագցնում էին՝ ճիշտ և ճիշտ փոքրիկ ջենտլմենի պես:*

*Համերգից հետո տնեցիները հարցրին փոքրիկ Ֆրեդերիկին, թե ամենից շատ ի՞նչը դուր եկավ ունկնդիրներին:*

*Նա պատասխանեց.*

*— Իմ ճերմակ, օսլայած օձիքը:*

* * *

*Կարուզոն գնելով մի տուն, պատվիրում է այն վերանորոգել։ Իսկ ինքը սենյակներից մեկում փորձում է որոշ երգեր ու արիաներ։ Շուտով սենյակ է մտնում ներկարարներից մեկը.*

*— Ես միայն մի վայրկյանով... Ուզո՞ւմ եք, պարո՛ն, որ նորոգումը շուտ վերջանա։*

*— Անշուշտ,— պատասխանում է Կարուզոն։*

*— Դրա համար դադարեք, խնդրեմ, երգելուց, որովհետև հենց որ սկսում եք, բանվորները թողնում են աշխատանքը ու ձեզ լսում։ Ոչ մի կերպ հնարավոր չէ ստիպել նրանց աշխատանքի վերադառնալ։*

*Հետագայում Կարուզոն ասում էր, որ դա իր կյանքի ամենահաճելի պահերից է եղել։*

Մի անգամ Բրամսը նվագում էր միջակ ջութակահարի հետ: Վերջինիս վատ կատարումից վայրացած Բրամսը այնպիսի ուժգնությամբ է սկսում վարկել ստեղներին, որ ջութակահարը ստիպված կանգ է առնում:

— Ներեցե՛ք, պարո՛ն, բայց ես ինձ բոլորովին չեմ լսում:

— Օ՜, ի՜նչ երջանիկ եք,—խորը հոգոց է արձակում Բրամսը:



* * *

*Երբ Ջուզեպպե Վերդին վերջացնում է «Տրուբադուր» օպերան, իր բարեկամներից մեկին, որը անգութ քննադատ էր, ծանոթացնում է մի քանի կարևոր դրվագների հետ:*

*— Ի՞նչ կարծիք ունեք սրա մասին,— հարցնում է կոմպոզիտորը:*



*— Եթե ուզում եք, որ անկեղծ լինեմ, պետք է ասեմ, որ բավականին անհասկանալի է:*

*Վերդին փարվում է նրան, ամուր գրկում:*

*— Շնորհակալությո՛ւն,— բացականչում է,— շա՜տ ուրախացրիք ինձ: Եթե գործը ձեզ դուր չի գալիս, վստահ եմ, որ հանդիսատեսը այն մեծ ոգևորությամբ կընդունի:*

*Վերդիի հույսերը արդարացան:*



*Լեհերենից թարգմ. ԱՐԵՎԻԿ ՇԱՎՈՅԱՆԸ*

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*

10 կ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806



ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

## ՄԻ ԼՈՐԻ ԾԱՌ

Ուրցի նոր բուրմունք կա օդում,
Օդի մեջ՝ ցոլանքներ պայծառ,
Քարայրից պաղ ջուր է կաթում
Ու թրջում մամուռ ու մացառ:
Թաց հողից ծիլերը հանած՝
Դաշտի մեջ ժպտում է մորին,
Մի ծառ իր նազանքը կանաչ
Ստվերով պարզել է ծորին:
Գարունը քայլում է գյուղով,
Հորդում է հեղեղը վերջին,
Մի լորի կտրված ճյուղով
Լալիս է անտառի փեշին...



## ԳԻՇԵՐՎԱ ՀՈՂՄԸ

Հողմը զարթնել էր գիշերվա կեսին,
Ձյան սառը փոշին երկինք էր հանում,
Իսկ անտառը ծեր սարերի ուսին
Վայրագ հողմի հետ կռիվս էր անում:
Հողմը զարկում էր ծառերին դալար,
Ուզում էր նրանց գլորել հատ-հատ,
Բայց պահում էին կաղնիներն իրար
Եվ լորիներին ներշնչում հավատ:
Հաճարիները կրծքերով մամռոտ
Ետ էին պահում սարսափը խոնավ,
Լսվում էր հեռվում աղմուկ ու որոտ,
Բայց իմ անտառը ահ չուներ բնավ:
Հողմը շարժում էր մի ձյունաբլուր,
Զարկում ծառերին զայրույթով վարար:
Ծիծաղում էին կեչիները լուռ,
Ճերմակ հայացքով գուրգուրում իրար...
Այսպես երգում էր իմ անտառը խոր
Եվ անհոգ նայում սարերի գահից,
Իսկ սարի լանջին մի ծառ մենավոր
Լուին լալիս էր ընկնելու ահից:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ